ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑ

# Ե Ր Կ Ե Ր

## ՀԻՆԳ ՀԱՏՈՐՈՎ

## Ա

## ՊԱՏՄԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ԵՐԵՎԱՆԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ- 2006

ՀՏԴ 941(479.25)
ԳՄԴ 63.3(2Հ)
Ա 205

**Ադոնց, Ն. Գ.**

Ա 205 Երկեր. հատ. Ա., Պատմագիտական ուսումնասիրություններ /Հրատարակության պատրաստեց Պ. Հ. Հովհաննիսյանը . - Եր., Երևանի համալս. հրատ., 2006, 652 էջ + 1 էջ ներդիր:

Նիկողայոս Ադոնցի երկերի առաջին հատորն ընդգրկում է հին և միջնադարյան Հայաստանի քաղաքական պատմության ու հոգևոր կյանքին, սոցիալ-տնտեսական հարաբերություններին նվիրված հիմնական աշխատությունները: Ներկայացված ուսումնասիրություններից շատերը կարևոր ներդրում են ոչ միայն հայագիտության, այլև ընդհանուր պատմագիտության բնագավառում:

Հասցեագրվում է հայագետներին և ընթերցող հանրությանը:

Ա $\frac{0503020913}{704\ (02)\ 06}$ 2006

ԳՄԴ 63.3(2Հ)

ISBN 5-8084-0704-4

© Պ. Հ. Հովհաննիսյան, 2006 թ.
© Երևանի համալսարանի հրատարակչություն, 2006 թ.





FUNDAÇÃO CALOUSTE GULBENKIAN

ԵՊՀ հրատարակչությունը իր երախտագիտությունն է հայտնում
**ԳԱԼՈՒՍՏ ԳՅՈՒԼԲԵՆԿՅԱՆ**
հիմնարկության Հայկական բաժանմունքի տնօրեն
դոկտոր **ԶԱՎԵՆ ԵԿԱՎՅԱՆԻՆ,**
մեծանուն հայագետ Ն. Ադոնցի երկերի ժողովածուի
հինգհատորյակի հրատարակությունը նախաձեռնելու և
հովանավորելու համար:

***Խմբագրական հանձնաժողով***
***Հովհաննիսյան Պ. Հ., Մարդոյան Ա. Գ., Ստեփանյան Պ. Գ.***

***Հատորը հրատարակության պատրաստեց***

***Պ. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԸ***

2. 748-750 թթ. հակաարաբական ապստամբության իրադարձությունները քննելիս Արոնցը համերաշխության եզրեր է մատնանշում Աշոտ Բագրատունու և Վասակ Սյունեցու քաղաքական ուղեգծերի միջև. «Պետք կա՞ նկատելու, որ Աշոտ [Բագրատունին] իր վարմունքով նվազ ուխտանենգ չէր Գրիգոր [Մամիկոնյանի] նկատմամբ, քան Վասակ Սյունին՝ Վարդան [Մամիկոնյանի]: Բայց տե՛ս, որ [Ղևոնդ] պատմիչը «որդիք յանցանաց» է անվանում Գրիգորի կուսակից ուխտապահներին»..., իսկ Աշոտին՝ «պսակ պերճութեան եւ փառք ազգիս Հայոց» (տե՛ս սույն հատորը, էջ 235): – Էջ 186:

3. Վարդան-Վասակ հարաբերության և աղերսվող հարցերը բավականին անդրադարձ են ունեցել պատմագիտության մեջ, որոնց համառոտ վերլուծությունը տե՛ս **Հ. Սուքայան,** Վարդանանց ապստամբության մասին, Երևան, 1989: – Էջ 187:

## ՀԱՅՈՑ ԱՌԱՔԵԼՈՒԹՅՈՒՆԸ ՀՈՆԱՑ ԱՇԽԱՐՀՈՒՄ (Զ ԴԱՐ)

(էջ 189)

Գրված է 1902 թ. ապրիլին Լոնդոնում: Առաջին անգամ տպագրվել է «Արարատ» ամսագրում (1902, № 3-4, մարտ-ապրիլ, էջ 262-274): Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Զաքարիա Հռետորի (Միտելենացի) ժամանակագրության այս հատվածի, ինչպես նաև ամբողջ երկասիրության հայերին ու Հայաստանին վերաբերող հատվածների հայերեն թարգմանությունը տե՛ս «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին». 8. Ասորական աղբյուրներ. Ա. թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հ. Գ. Մելքոնյանի, Երևան, 1976, էջ 311-317:– Էջ 193:

2. Ն. Պիգուլևսկայան ("Сирийские источники по истории народов СССР", Москва-Ленинград, 1941, стр. 85) ենթադրաբար ընթերցում է՝ «Մակար»: – Էջ 195:

3. Հոների ծագման մասին առկա գրականության վերլուծությունը տե՛ս՝ **Г. В. Хауссиг,** К вопросу о происхождении гуннов, "Византийский временник", 1977, № 38, стр. 59-71: – Էջ 197:

## ԱՐՏԱՎԱՆ ԱՐՇԱԿՈՒՆԻ

(էջ 198)

Գրված է 1929 թ. Փարիզում: Բնագիրը պահվում է Բոստոնի «Հայրենիք» ամսագրի արխիվում: Առաջին անգամ տպագրվել է «Հայրենիք» ամ-

# ՀԱՅՈՑ ԱՌԱՔԵԼՈՒԹՅՈՒՆԸ ՀՈՆԱՑ ԱՇԽԱՐՀՈՒՄ (Զ ԴԱՐ)

Հին հայոց քարոզչական գործունեության նկատմամբ շատ բան չգիտենք, մինչդեռ այդ անհշանակ չէ նոցա քաղաքակրթական դերը որոշելու համար Արևելքում: Պատմագիրներն ավանդում են, որ հայերը քարոզել են քրիստոնեություն Աղվանքում և մասամբ Վրաստանում: Սակայն երևում է, որ նոցա ավետարանող ձայնը հնչել է նաև Կովկասյան շղթայի այն կողմը: Այս մասին ստույգ և խիստ հետաքրքիր տեղեկություններ կան սորի մի հեղինակի մոտ, որ 1870 թ. հրատարակեց դր. Ժ. Լանդ՝ Բրիտանական մուզեի ձեռագրից[1]: Վատիկանի մի ձեռագրում գտնվում են այս երկից ինչ ինչ հատվածներ՝ հռչակավոր Ասսեմանին իր Bib. Or., հատ. II. տվեց նոցա բովանդակությունը, իսկ **Mai** լույս ընծայեց Scr. Veterum nova collectio, t. X: Գիտնականները հակամետ էին վերագրելու այդ երկը Զաքարիա միաբնակ հռետորին, որին հիշում է Եվագրիոս, իբրև եկեղեցական պատմության հեղինակի: Բայց Լանդի հրատարակությունից պարզվեց, որ այդ աշխատությունը Զաքարիայինը չէ, այլ մի ուրիշ սորի Անանուն հեղինակի: Սա օգտվել է Զաքարիայի գրքից, ինչպես ինքը վկայում է Գ և Դ գրքերի վերջում, և նորա «Եկեղեցական քրոնիկոնից» քաղել է իր պատմության Գ - Զ գիրքը, իսկ մնացածն (Զ - ԺԲ) ինքն է գրել:

Զաքարիա Հռետորի գրքի նյութն է եղել 450-491 թթ. եկեղեցական պատմությունը, գրված հունարեն և ուղղված Եվպրաքսիոս անուն ոմն պալատականի: Այս աշխատությունը մեզ չի հասել, Լանդի հրատարակածը սորի հեղինակի սեփական գրությունն է: Ձեռագիրը չէ պահել սորա անունը, գրքի որոշ ցուցումներից երևում է, որ անցքերին ժամանակակից մարդ է, ապրել է Հուստինիանոսի դարում և գիրքը կազմված է այլ և այլ ժամանակ 555, 561 և 569 թվականներին:

Անանուն սորու երկը կարևոր հիշատակարան է VI դարի պատմության համար: Իսկ մեզ համար առանձնապես հետաքրքիր է նորա վերջին գլուխը, ուր գտնում ենք Հայոց մասին շահեկան տեղեկություններ: Օգուտ քաղելով

[1] «Zachariae episcopi Mitylenes aliorumque scripta historica graece plerumque deperdita». Anecdota syriaca, t. III: Անգլերեն թարգմանությունը լույս տեսավ 1899 թ.՝ «The Syriac chronicle known as that of Zachariah of Mitylene», by F. J. Hamilton, F. Brooks. London.

անգլիական թարգմանությունից, առաջ ենք բերում այդ կտորն ամբողջապես:

«Պտղոմեոս Փիլադելփոսից 150 տարի հետո, Պտղոմեոս Փիլոմետորը բարի ցանկությամբ ջանադիր եղավ և սուրհանդակներ, նամակներ և պարգևներ ուղարկելով ազգերի երկրների պետերին, թախանձեց նրանց գրել ու ուղարկել դրացի ժողովուրդների և իրենց իշխանության տակ գտնված աշխարհների սահմանները, նույնպես նրանց ազգաբնակությունն և սովորույթների նկարագիրը: Նրանք գրեցին և ուղարկեցին, բացի հյուսիսային կողմից, որ ձգվում է դեպի Արևելք և Արևմուտք: Եվ մենք հարկավոր համարեցինք արտագրել այդ այստեղ վերջում, հետաքրքրվողների գիտության համար (հետևում է Պտղոմեոսից մի բանաքաղ, որ բաց է թողնվում):

Ազգերի երկրների այս նկարագիրն, ինչպես հիշվեցավ վերև, եղավ Պտղոմեոս Փիլատելփոսի ջանքով, և նորա թագավորության 30 տարին[1]՝ 150 տարի Ք. ա., այնպես որ այն ժամանակից մինչև ներկայս, այն է մեր օրերի լուսափայլ թագավորի՝ Հուստինիանոսի իշխանության 28 տարին, Ալեքսանդրյան 866 թ., 333 Օլիմպիատ - անում է 711 տարի միջոց: Այսպիսի ձիգ շրջանում, հարկավ, քանի՛ քանի՛ նոր քաղաքներ են շինվել աշխարհում ամեն ազգերի մեջ, Պտղոմեոսից մինչև ներկա օրս, մանավանդ Փրկչի ծննդից սկսած: Խաղաղությունը թագավորել է ազգերի, լեզուների և ցեղերի մեջ. նորա թողել են իրենց նախկին սովորությունն, ո՛չ մի ազգ ոտի չէ կանգնել պատերազմելու, կամ սուր հանելու ընդդեմ այլ ազգի և ո՛չ իսկ ձգտել են կռվելու: Կատարվեցավ մարգարեի խոսքը թե՝ «Ձուլեսցեն զսուսերս իւրեանց ի խոփս և զնիզակս իւրեանց ի մանգաղս»[2]:

Սրանցից զատ հյուսիսային կողմում կա այլ ևս հինգ հավատացյալ ժողովուրդ, որ ունին 24 եպիսկոպոս. նրանց կաթողիկոսը կենում է Դվինում, Պարսկահայքի գլխավոր քաղաքում: Նրանց[3] կաթողիկոսի անունը Գրիգոր էր՝ մի առաքինի և նշանավոր մարդ:

Ապա Գուրզան՝ մի երկիր Հայաստանում, և որի լեզուն նման է հունարենի: Սրանք ունին քրիստոնյա իշխան, ստորակա պարսից թագավորի:

Ապա Արրան աշխարհ՝ Հայոց երկրում, իր սեփական լեզվով. հավատացյալ և մկրտված ժողովուրդ է, սա ևս ունի իշխան, ստորակա պարսից թագավորին:

---

[1] Աստի հեղինակը Կլավդիոս Պտղոմեոսին շփոթմամբ Եգիպտոսի թագավորի տեղ է ընդունել:

[2] **Եսայի Մարգ.**, Բ, 4:

[3] Ձեռագրում քանի մի տառ եղծված է, ինչպես նշանակում է Լանդ, անգլիացի թարգմանիչներ իրավամբ ենթադրում են, որ ընկած է հավանորեն «առաջին» բառը:

Ապա Սիսական աշխարհ, իր սեփական լեզվով. քրիստոնյա ժողովուրդ. այստեղ կան նաև հեթանոսներ:

Բազգուն աշխարհ իր սեփական լեզվով. կից է և ձգվում է մինչև Կասպից պահակն և ծովը, պահակ, որ գտնվում է Հոնաց երկրում: Պահակից այս կողմը - բուլղարներն են, որ ունին իրենց սեփական լեզուն, հեթանոս և բարբարոս ժողովուրդ. ունին քաղաքներ: Հետո ալաններն, որ ունին հինգ քաղաք: Հետո Դաղու(?) ցեղի մարդիկ, որ ապրում են լեռներում և ունին բերդեր: Ունոնգուր, վրանաբնակ ժողովուրդ. Օգուր, Խազար, Դիրմար(?), Սարուրգուր(?), Բագարսիկ(?), Խուլաս (?), Աբդել, Եփթալիտ - այս 14 ժողովուրդները բնակվում են վրաններում: Սրանք ապրում են ոչխարի մսով, ձկով, վայրի կենդանիների մսով և զենքի միջոցով (կողոպուտով): Սրանցից այն կողմը գաճաճների և շնամարդկանց ցեղն է, իսկ սոցանից հյուսիսարևմուտք ամազոններն, որ միատիտ կանայք են և ապրում են մենակ իրենք իրենց, զինավարժ են և հեծյալ: Սրանց մեջ այր մարդիկ չկան. և երբ ուզում են զուգավորվել, գնում են խաղաղությամբ իրենց հարևան ցեղի մոտ, կապվում են նորանց հետ մի ամիս և վերադառնում իրենց տեղը: Հետո, երբ ծնում են, եթե երեխան տղա է, սպանում են, իսկ եթե աղջիկ, պահում: Այս եղանակով պահպանում են իրենց դիրքը: Նրանց մոտ ապրող ցեղն է Հարուս(?) - բարձրահասակ և հաղթանդամ մարդիկ, որ զինավառություն չունին, և ձին անկարող է տանել նրանց, անդամների խոշորության պատճառով: Իսկ արևելյան կողմում, նույնպես թեք դեպի հյուսիս ապրում են երեք այլ սև(ամորթ) ցեղ:

Արդ՝ սրանից ավելի քան 20 տարի առաջ, Հոնաց աշխարհում քանի մի մարդիկ թարգմանեցին ինչ ինչ գրքեր տեղական լեզվով: Թե ինչպես կատարվեցավ այդ բանն, որ հաջողեց Տերը, կպատմեմ այնպես, ինչպես լսել եմ հավատի մարդկանցից - Հովհան Ռզայնեցուց, որ կենում է Իշկունու հիմնած վանքում՝ Ամիդի մոտ, և Թոմաս խազախորդից [կաշեգործ]. սա այն գերիների թվումն էր, որ տարավ Կավատ 50 կամ ավելի տարի առաջ:

Պարսից հողն ոտ կոխելուց հետո, սորանք նորից վաճառվեցան հոներին. անցան պահակից մյուս կողմն և մնացին նրանց երկրում ավելի քան 30 տարի, առին կանայք և ծնան որդիք, բայց մոտավորապես այսքան ժամանակ անցնելուց հետո նրանք դարձան և պատմեցին մեզ իրենց բերանով հետևյալը:

Երբ որ եկան Հոռոմ երկրից վարած գերիներն, որ տարել էին հոները, և մնացին նրանց երկրում 34 տարի, այն ժամանակ հրեշտակն երևեցավ Կարդուծատ անունով մի մարդու, որ Առան երկրի եպիսկոպոսն էր, և ինչպես ինքն եպիսկոպոսն էր պատմում, ասաց նորան. «Առ երեք բարեպաշտ քահանա և գնա՝ դաշտ և ստացիր ինձնից այն պատգամն, որ ուղարկում է

քեզ Տերը. որովհետև ես եմ զերիների պահապանը, որոնք քշված են Հռոմ երկրից դեպի ազգերի երկիրը և վերառաքել են իրենց աղոթքները Աստուծուն: Ինձ պատվիրած է այն, ինչ որ հարկավոր է քեզ ասել»: Երբ Կարդուծատը, որ հունարեն թարգմանությամբ նշանակում է *Θεόκλητος,* վեր կացավ և գնաց ջերմեռանդ սրտով անապատ` - և Աստված կանչեց, իր երեք երեցների հետ, հրեշտակն ասաց նրան. «Արի՛, գնա՛ ազգերի երկիրը, պահպանիր մանուկներին մահից, կարգիր նորանց համար քահանաներ, հաղորդիր հավատի խորհուրդները և զորացու նրանց: Ահա՛, ես քեզ հետ եմ և սիրով կաջակցեմ քեզ այնտեղ. դո՛ւ հրաշքներ կգործես ազգերի մեջ, և կունենաս ամեն բան, ինչ որ հարկավոր կլինի քեզ քո սպասավորության համար»: Նորա հետ գնացին և ուրիշ չորս հոգի: Մի երկրում, ուր դժվար է հանգիստ գտնել, այս յոթ երեցները ամեն երեկո ստանում էին բնակարան, յոթ նկան հաց և մի աման ջուր: Նրանք մտան այնտեղ ո՛չ պահակով, այլ անցան լեռների վերայից: Տեղ հասնելուն պես զերիներին պատմեցին այս բոլորը. շատերը մկրտվեցան, հոներից շատերն էլ քրիստոնեություն ընդունեցին: Այստեղ մնացին յոթ տարի և թարգմանեցին գիրքեր հոնաց լեզվով: Արդ հենց այդ ժամանակն էր, որ թագավորն Պրոբոսին դեսպանությամբ ուղարկեց այն կողմերը, որպեսզի նոցանից վարձով մարդ հավաքի ազգերի հետ պատերազմելու համար: Երբ սա լսեց հոներից Ս. մարդկանց մասին և տեղեկացավ նորանց պատմության զերյալներից ևս, մեծ անձուկ և փափագ հայտնեց նրանց տեսնելու: Եվ տեսավ ու ստացավ նրանց օրհնությունը. և մեծ հարգանք էր ցույց տալիս նոցա ազգերի առաջ:

Մեր թագավորն իրազեկ լինելով վերև հիշած դեպքերին, որ Տերը հաջողեց, հարևան Հռոմ քաղաքների կողմերից 30 ջորի` բեռնած ուղարկեց նրանց. նմանապես ալյուր, գինի, յուղ, կտավե շորեր և ուրիշ մթերք ու սրբազան անոթներ: Պրոբոսը կենդանիներին էլ թողեց նրանց իբրև նվեր, որովհետև հավատացյալ և բարեսեր մարդ էր:

Արդ` մի ուրիշ հայ, նույնպես եպիսկոպոս, որի անունն էր Մակու, նախանձավոր եղավ այդպիսի ազնիվ գործերի և գնաց 14 տարուց հետո, կամ քիչ ավելի: Նա էլ բարի ցանկություն ունեցավ և հոժարակամ գնաց այդ երկիրը, իր քանի մի երեցների հետ միասին: Կանգնեց աղյուսյա եկեղեցի, տնկեց բույսեր, ծանոթացրեց զանազան տեսակ սերմերի, նշաններ գործեց և մկրտեց շատերին: Այդ ազգերի իշխանները տեսնելով այս նորությունները, զարմանում էին մարդկանց վերա և մեծ սիրով և հարգանքով էին վերաբերում նրանց: Իշխաններից յուրաքանչյուրը հրավիրում էր նրանց իր սեպհական գավառը և իր ժողովրդի մոտ և աղերսում իրենց ուսուցիչ լինել. և ահա՛ նորանք այնտեղ են այժմս:

Այս անցքը մի նշան է Աստուծու ողորմության, որ հոգում է այն ամենի

համար, որ նորանն են ամենուրեք: Եվ այսուհետև հասած է ժամանակը, որ նորա զորության ներքո է, որ «լրումն հեթանոսաց մտցէ», ինչպես ասում է առաքյալը[1]: Արդարև, պարսից թագավորն իսկ, ինչպես պատմում են գործին տեղյակ մարդիկ, յոթ տարի է ձեռք է քաշել խեղդած կամ մորթած անասուններ, ինչպես և անարդար կենդանիների և թռչունների միս ուտելուց, սկսած այն օրից, երբ նորա մոտ եկավ Տրիբոնիա արքիատրը (բժշկապետ), որ գերի էր ընկած այդ ժամանակ. և մեր լուսափայլ թագավորի կողմից եկավ Բիրովի, մի կատարյալ մարդ, նորանից հետո Կաշովի, իսկ այժմ Գաբրիելը՝ Մծբինցի քրիստոնյա: Այդ ժամանակվանից ի վեր հասկացավ, թե ինչ պիտի լինի իր ուտեստը, որն այլևս չի պղծվում հին սովորության համեմատ, այլ թերևս օրհնվում, և հետո ուտում: Հովսեփը, քրիստոնյաների կաթողիկոսը նույնպես նորա վստահությունն է վայելում մեծապես և սերտ կապված է նորան.. որովհետև ինքը բժիշկ է, մոգպետներից հետո առաջին տեղումն է նստում նորա առաջ և ինչ որ խնդրում է, ստանում է:

Բացի այն, որ գերիների և Ս. մարդկանց հետ քաղցր էր վարվում, այժմ իրեն շրջապատող քրիստոնյա բժիշկների խորհրդով, շինել է տվել հիվանդանոց, մի բան, որ առաջ անծանոթ էր, և նվիրել է 100 ջորի և 50 ուղտ, բեռնած արքունի շտեմարանի բարիքներից, նաև 12 բժիշկ և այլ պիտանի բաներ: Եվ արքունի դրան...» (այստեղ ձեռագիրը ընդհատվում է):

Այս հատվածը (1) գրված էր հեղինակի վկայությամբ, Հուստինիանոսի 28 տարին, Աղեքսանդրյան 866 թ. և 333 օլիմ., այն է՝ 555 թ. (527+28 = 866 - 311 = (322/4) + 3 - 776 = 555): Հոները քրիստոնեություն ընդունեցին, դարձյալ հեղինակի ասելով մոտավորապես 20 տարի առաջ, ուրեմն՝ 555 - 20 = 535 թ.: Կավատ իր տարած գերիները վաճառեց հոներին, գերիները մնացին այնտեղ 34 տարի, որից հետո երևեցավ Կարդուծատը: Կավատի գերեվարությունն եղավ 502 թ., երբ սկսվեցան պարսկական կռիվները: Ուրեմն՝ և այս հաշվով Կարդուծատի քարոզությունը վերաբերում է (502 + 34) = 536 թ., սակայն Պրոբոսի ներկայությունը քիչ խանգարում է ժամանակագրությունը: Սա Անաստասիոս կայսրի քեռորդին էր. և ինչպես պատմում է Պրոկոպիոսը[2], Հուստինոսի (518-527) վերջին տարիները ուղարկվեցավ Հոնաց մոտ, որպեսզի զորք վարձի և տանի Վրաց Գուրգեն թագավորի օգնության ընդդեմ պարսից: Քանի որ Հուստինոսը մեռավ 527 թ., Պրոբոսի երթը չէր կարող լինել ուշ քան 526 թ.[3], այն ինչ հատվածիս հեղինակի ասությամբ, Պրոբոս արդեն հոների մեջ էր, երբ առաքյալները քարոզում էին: Եթե ճիշտ է, որ քարոզությունն յոթ տարի տևեց, թերևս 526 թ. հաշվելու

[1] Տե՛ս Հռովմ., ԺԱ, 25.

[2] B. P. I, 12.

[3] Ըստ Muralt-ի՝ 522 թվականն: **Essai de Chronogr.**, p. 135:

լինենք առաջին, իսկ 534 թ. վերջին տարին: Պրոկոպիոս, ժամանակակից պատմագիր, որ իր աշխատությունը հասցրել է մինչև 50-ական թվականները, ոչինչ չգիտե հոների քրիստոնեություն ընդունելու մասին: Հուստինիանոսի թագավորության սկզբներում քրիստոնեություն տարածվեցավ լազերի և աբխազների մեջ: Կայսրը նորանց վերա եպիսկոպոս նշանակեց Եվփրատաս անուն աբխազին, որ պալատական ներքինիներից էր[1]: Մեր հեղինակից երևում է, որ գրեթե նույն ժամանակներն սկսվեցավ Ավետարանի քարոզությունը հոների մեջ: Պրոկոպիոս, որ պատմում է լազերի և աբխազների մասին, զարմանալի է, որ չէ հիշում նույն երևույթը նորանց հարևան հոների մոտ: Այս հանգամանքը, թերևս տեղիք տար կարծելու, որ ասորի հեղինակի պատմած զրույցը, ոչ այլ ինչ է, եթե ոչ մի արձագանք լազերի կամ աբխազների մեջ կատարված իրողության: Սակայն Պրոկոպիոսի լռությանն էլ մեծ նշանակություն չէ տալու. նա այնքան էլ տեղյակ չէ երևում անմատչելի լեռներում կատարվող անցքերին, մանավանդ այն մասի, որ պարսից իրավասության տակ էր, ինչպես էր Հոնաց աշխարհը:

VI դարու սկզբներում հոնաց թագավորն էր Ամբազուկ, սորա ձեռքին էր հռչակավոր պահակը՝ այժմյան Դարիալի կիրճը. զգալով իր մահը ծերունի հոն թագավորը առաջարկում էր Անաստաս կայսեր տիրանալ պահակին և փոխարեն տալ իրեն դրամական վարձատրություն: Անաստասը մերժեց, իսկ Ամբազուկը մահից հետո պարսից թագավոր Կավատը վանեց նորա որդիներին և հափշտակեց պահակը[2]:

Այսպիսի քաղաքական պարագայում, բնական է, եթե հոները հարվեին հունական կողմը և հակում ցույց տային քրիստոնեություն ընդունելու: Դրացի քրիստոնյա ժողովուրդների ազդեցությունը, և մանավանդ գերիների 30-ամյա բնակությունը հոների մեջ, հարկավ, աննշանակ չեն այս դեպքում: Գերիների թվում կային անշուշտ նաև հայեր, որոնց շնորհիվ քարոզիչները հանդիսանում են հայեր՝ Աղվանից եպիսկոպոս իր երեցներով: Եպիսկոպոսի անունն էր Կարդուծատ, որ հեղինակի մեկնությամբ նշանակում է *θεόκλητος*: Անգլիացի թարգմանիչները բացատրում են անունս հայերեն «կարդալ» և «Աստված» բառերից: Բայց հայերեն այդպիսի բառ չկա և բարդությունն իսկ հայացի չէ: Ավելի հավանական է ենթադրել, որ Կարդուսթ բառի մեջ առաջին երկու տառերը աղավաղված են. և պետք է կարդալ Աստվատր՝ Աստվածատ(ուր):

«Աստվածատուր» անունը, իբրև հատուկ անուն հին մատենագրության մեջ չի պատահում: Կարծես, եպիսկոպոսի իսկական անունը չէ, այլ մակդիր. և հունարեն թարգմանած է, ոչ սովորական, *θεόδοτος*, կամ *θεοδόσιος* այլ

[1] B. got., IV, 3.

2 B. P. I, 10.

*θεόκλητος*, որ այնքա՜ն դիպող է պատմությա՛ն - Աստված իր հրեշտակի միջոցով նորան **կանչում** է առաքելության:

Երկրորդ հայ եպիսկոպոսի անունը նույնպես աղարտված է: Դր. Լանդ կարդում է ﻫ, իսկ անգլիացի թարգմանիչները՝ ﺶ = Մակու (արդյոք Մակար?): - Սա եւ աղվանից կամ սյունյաց եպիսկոպոսն է (2): Հետաքրքրական է, որ Ստեփանոս Օրբելյան հիշում է VI դար ումն Մակար եպիսկոպոս՝ Պետրոս Քերթողի նախորդ: Սյունյաց պատմագիրը եպիսկոպոսների ցանկը կազմելուս անշուշտ օգտվել է Պետրոս Քերթողի պատմական երկից, ինչպես ինքը վկայում է: Բայց և այնպես, դժվար է ենթադրել, որ խոսքը այս Մակարի մասին է. մանավանդ որ ավելի քան հավանական է, որ «մակու» ձևի մեջ թաքնված է ուրիշ անուն, քան Մակար: Վերջինս լինելով ընդհանուր քրիստոնեական անուն, չէր աղճատվի:

Հատվածումս հիշված Հովսեփ կաթողիկոսը - հայ չէր, այլ նեստորական արքեպիսկոպոս: Ահա ինչ է գրում Ասսեմանին դորա մասին. **«Joseph Chosroae regis opera, cujus medicus erat, anno graecorum 863 electus, tribus post annis depositus fuit, nemine tamen, quoad vixit, propter ejusdem Chosroae timorem in ejus locum substituto»** (B. O., II, p. 413): Ասսեմանին այս տեղեկությունը առած է Բարհեբրեի ժամանակագրությունից: 863 թ. Աղեքսանդրյան թիվն է և հավասար է (863-311) = 552 թ. Ք.: Նա կառավարել է եկեղեցին միայն 3 տարի, ուրեմն մինչև 555 թ.՝ մեր ասորի հեղինակի գրության տարին:

Ստույգ և պատմական անձնավորություն է նաև Տրիբոնիա արքիատրը: Սա, իրոք, բժիշկ էր կոչումով. եղել է Խոսրովի մոտ և վայելել նորա շնորհը, բայց ո՛չ իբրև գերի: Հուստինիանոս նորան ուղարկեց, Խոսրովի խնդրանքով իր թագավորության 19 տարին, 546 թ. ըստ մեր հեղինակի՝ 548, որովհետև Տրիբոնիայի գալստի օրից մինչև 555 թ. հաշվում է յոթ տարի: Խոսրով սիրեց նշանավոր բժշկին և նորա միջնորդությամբ արձակեց հոռոմ գերիներին[1]: Կաշովի և Բիրովի անունները խնդրական են, ըստ Պրոկոպիոսի, մոտավորապես այդ ժամանակները Հուստինիանոս դրկեց Կոստանդին և Սարգիս անձնավորությունները Խոսրովի մոտ, իբրև դեսպան (**Proc**., I, p. 259):

Ազգագրական անուններից, Ունոգուր, Օգուր, Սաբիր, Փորբրիգոր, Ավար, Խազար, Եփթալիտ - հայտնի են և պատահում են ուրիշ հեղինակների մոտ: Անգլիացի թարգմանիչները հարցական նշան են դրել մյուս անունների առաջ: Սարուրգուր = Բյուզանդական *Σαράγουροι* (**Prescus**., p. 158 և 161 Bon.), որ Ույգուրների մի ցեղն է: Ույգուրները թրքական ծագումն ունին. և Սարուրգուր նշանակում է շեկ Ույգուրներ (թրքերեն սարու բառից)[2]:

---

[1] **Procopii,** Bella persica, p. II, 28. B. g., IV, 10.

[2] **Радлов,** Das kudatku Buch. Ներածություն, էջ 73.

**Բագարսիկ,** անշուշտ, Փավստոս Բուզանդացու **բաղասճիքն** է: Քուլաս, կամ **Խոզլաս** և **Դարու,** հայ Անանուն աշխարհագրության մեջ հիշված *խեղայք* և **դիրոյք** են, հավանորեն: Արդեւ, Եփթալիտ բառի տառադարձությունն է, որ գտնվում է Teoph. Sin. մոտ՝ «*τῶν Ἀβδελῶν (φημὶ δὴ τῶν λεγομένων Ἐφθαλιτῶν*», p. 282, ed. Bonn: Ինչ վերաբերում է *Դիրմար* անվան, կարելի է համեմատել Եղիշեի *զղվարի* հետ, եթե ներվի վերջինս կարդալ *Դղվար:*

Ամազոնների հարևան ցեղը, որի հետ հարաբերություն ունեին նրանք, Ստրաբոն կոչում է *γαργαρεύς* (Geogr., XI, 5) մեր հեղինակի **հարուսը,** անտարակույս, Ստրաբոնի (Գար)գարևսի հետ կապ ունի:

Գուրզան՝ Վրաստանն է. Ջորջիա անունը հունական *γεωργοί* (երկրագործ) բառն է ասիական արտասանությամբ[1]: Բազգուն = Աբասգիա, Աբխազ: Ուշադրության արժանի է, որ Վրաստանը և Աբխազիան Հայոց երկրի մասն է համարված, հավասար Սիսական աշխարհի: Հեղինակի կարծիքով, վերջինս իր սեփական լեզուն ունի և դեռևս VI դարում այնտեղ եղել են հեթանոսներ:

Եկեղեցական պատմության համար կարևոր վկայություն է, որ VI դարի կիսում Վրաստանը, Աղվանից և Սյունյաց աշխարհների նման Հայոց կաթողիկոսի իրավասության տակ էր: Պրոկոպիոսը նույնպես հիշում է, որ քրիստոնյաների եպիսկոպոսապետը կաթողիկոս էր կոչվում հունական բառով, որովհետև այն կողմերի քրիստոնյաների ընդհանուր պետն էր (*τόν τε τῶν χριστιανῶν ἱερέα καϑολικὸν καλοῦσι τῇ Ἑλλήνων φωνῇ, ὅτι δὴ ἐφέστηκεν εἷς ὢν ἅπασι τοῖς ταύτῃ χωρίοις*" B. P., II, 25): Հայոց եկեղեցին ուներ 24 եպիսկոպոս: Ղազար Փարպեցուց երևում է, որ V դարում հայ եպիսկոպոսների թիվն 18 էր. պետք է ենթադրել, նույն 18 վիճակները մնացել էին և VI դարում: Այն ժամանակ Վրաստանի և Աղվանքի բաժին կմնա վեց եպիսկոպոսական թեմ:

Այսպիսով տեսնում ենք, որ մեզ հետաքրքրող հիշատակարանը իր բովանդակությամբ միանգամայն պատմական է: Կարդուծատի առաքելության հանգամանքները խիստ բնորոշ են ամեն մի առաքյալի կյանքը զարդարող զրույցների: Կարևորը պատմության հիմքն է, որ անշուշտ հավաստի է. այն է որ հայերը VI դարում փորձել են Ավետարանի և նորա հետ միասին քաղաքակրթության տարրական սկզբունքները սերմանել հյուսիսային անկիրթ ազգերի մեջ, հուսալով թերևս, այդ միջոցով չեզոքացնել նոցա հաճախակի և ավերիչ արշավանքները:

Հիշատակարանս զուրկ չէ նաև գրական նշանակությունից: Աղվանից եպիսկոպոս Կարդուծատի կյանքը հիշեցնում է ակամայից Փավստոս

[1] **Forbiger,** Handbuch., II, p. 445, № 39.

Բուզանդի նույնպես Աղվանից եպիսկոպոս Գրիգորիսի գործունեությունը: Եթե կուզեք, նմանությունը քիչ է՝ Գրիգորիսի փորձը անաջող ելք է ունենում և ինքն իսկ զոհ է գնում իր բարի դիտումների, իսկ Կարդուծատ, ընդհակառակը՝ հաղթանակում է: Բայց այդ քիչն էլ խիստ ուշագրավ է: Փավստոսի Սանեսանը Մազկքաց թագավոր է, աորի հեղինակի հոներն հարկավ թրքական ծագում ունեցող ույգուրները չեն, որոնց բյուզանդական պատմիչները ընդհանուր անվամբ հոն են կոչում (3): Այլ այն ազգն են, որոնց թագավորի անունը Ամբազուկ էր, ըստ Պրոկոպիոսի: Եթե նրանց ծագման խնդիրը դեռ պարզած չէ, սակայն աներկբա է, որ նոցա թագավորական տոհմը իրանական ծագում ուներ, ինչպես երևում է հատուկ անուններից. **Ամբազուկ**, ոչ այլ ինչ է, եթե ոչ հայերեն ան-բազուկ բառը. իսկ **Սանեսան** բառը նույնպես իրանական հնչյուն ունի:

Փավստոս Բուզանդացու և մեր հատվածի առնչության մասին, մենք վաղաժամ ենք համարում որևէ դրական պնդում: Մի բան պարզ է, որ քանի Փավստոսի վերջնական խմբագրության խնդիրն առկախ է մնում, սույն հատվածս կարող է հանդիսանալ երկսայրի սուր նույն խնդրի համար: VI դարի կեսը և մասնավորապես 555 թ. մի որոշ սահման է, որից կամ առաջ կամ հետո է կատարված Փավստոսի պատմության խմբագրությունը, այն ձևով ինչպես որ մեզ է հասած: Հատվածն ինքն իրեն վերցրած ունի թեր և ընդդեմ նշաններ: Խնդրի լուծման համար անհրաժեշտ են այլ օժանդակ հիմքեր: Փավստոսի նոր քննադատներից մեկը, պ. Գ. Տեր-Պողոսյան, քանի մի ուշագրավ դիտողություններով[1] կապ է որոնում Փավստոսի և VII դարու Անանուն աշխարհագրության մեջ, մի հանգամանք, որ տանում է Բյուզանդարան պատմությունը դեպի VII դար: Քննադատիս վարկածներն՝ իրենք իրենց դեռևս համոզկեր և կտրական փաստեր չեն խնդրի համար, բայց անպայման հարկավոր նյութեր են:

---

[1] **Գ. Տեր-Պողոսյան**, Նկատողություններ Փավստոսի պատմության վերաբերյալ, Վիեննա, 1901: